## Զինադադարութեան ժողովին առաջ

Մէկ քանի օրէն կը վերաբացուի Զինաթափութեան ժողովը։ Փակումէն առաջ, նախագահը, Հէնտըրսըն հրաւիրած էր պատուիրակութիւնները, որ գրաւոր կերպով ճշդեն այն թելադրութիւններն ու առաջարկները, զորս ներկայացուցեր էին Զինաթափութեան ժողովի առաջին շաբթուան ընթացքին։

Ցարդ, երկու պետութիւններ միայն պատասխանած են այս հրաւէրին, Իտալական եւ Հոլանտական կառավարութիւնները։



## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Ստանոզցի Տիկին Նուրան Գաֆճեան կը փնտռէ իր քոյրը՝ Տիկին Վառվառ Տօղանեան, որ կինն էր Թէմախցի Արշակ Տօղանեանի։ Չորս տարի առաջ նամակ կուգար Մէքսիկայէն։ Լուր ունեցողներէն կը խնդրուի տեղեկացնել՝ Mme. Nouran Cafédjian, 13 Bld. Clair Isnard. St. Jérôme, Marseille, France.

— Կը փնտռուի Հաճընցի Գէորգ Տըմպըլեան, հօր անունն Կարապետ (դերձակ)։ 1926ին հայր եւ որդի կը գտնուէին Պէյրութ։ Կը կարծուի թէ այժմ կը գտնուին Ֆրանսա։ Իմացնել՝ Minas Karachian, Caserne d'Offemont, Belfort, France։

Կը խնդրուի Սուրիահայ թերթերէն արտատպել։




Imp. A. DER (Agopian)

17, Rue Damesme, Paris (13)

*Le Gérant* *H. STEPHAN*




# ՎԱՀՐԱՄ ՓԱՓԱԶԵԱՆԻ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄՆԵՐԸ

# Վ. ՓԱՓԱԶԵԱՆ

ԿԸ ՆԵՐԿԱՅԱՑՆԷ

# „ՀԱՄԼԷԹ„

ՈՂԲԵՐԳՈՒԹԻՒՆ ՇԵՔՍՓԻՐԻ

(5 արար)

17 Ապրիլ Կիրակի ցերեկ ժամը ճիշդ 3ին

**MAISON de la MUTUALITÉ**ի սրահին մէջ

**24 Rue St. Victor** **Métro Maubert-Mutualité**

Կը մասնակցին.— Տիկիններ՝ Մ. Սուրաբեան, Անաֆիտ, Գայեանէ, Պ. Պ. Թօլաեան, Ա. Գմբէթեան, Կօթիկեան, Սարաֆեան, Մաքսուտեան, Տէրվիշեան, Աժտէրեան, Սուրէնեան եւ Սուրաբեան։

ՏՈՄՍԵՐՈՒ ԳԻՆԵՐԸ 25, 20, 15 ԵՒ 10 ՖՐԱՆՔ

Տոմսակները կը ծախուին յառաջի, կավռօշի խմբագրատուններ եւ միւս սովորական տեղերը, իսկ ներկայացման օրը՝ կէս օրէն սկսեալ թատրոնին կիշէն։

Ոչ ոքի տոմսակ չի ղրկուիր

Ռէժիսէօր՝ Վ. ՓԱՓԱԶԵԱՆ — Պատասխանատու վարիչ՝ Ս. ՍՈՒՐԱԲԵԱՆ



ՎԱՀՐԱՄ ՓԱՓԱԶԵԱՆ (Համլէթի դերին մէջ)

## Ազգերու Դաշնակցութեան օրակարգը

*Ազգերու Դաշնակցութեան խորհուրդին 67րդ նիստը տեղի պիտի ունենայ մայիս 9ին. օրակարգը արդէն հրատարակութեան տրուեցաւ: Օրակարգի վրայ է նաեւ Իրաքի հարցը: Խորհուրդը պիտի զբաղի Անգլիոյ առաջարկով՝ Իրաքի ազատագրման համար եւ տեղեկագիրը պիտի քննէ այն յանձնախումբին որ կազմուած էր մշակելու համար հոգատարութեան վերացման առթիւ, Իրաքի կողմէ կատարուելիք յայտարարութեան մը նախագիծը:*

*Խորհուրդը պիտի նշանակէ նաեւ յանձնախումբ մը որ պիտի մշակէ զէնքի, ռազմանիւթի եւ պատերազմական նիւթեղէնի պատրաստութեան յատուկ պայմանագրութեան մը նախագիծը:*

*Խորհուրդը պիտի զբաղի նաեւ Աւստրիոյ, Հունգարիոյ, Յունաստանի եւ Պուլկարիոյ ելմտական եւ տնտեսական կացութեամբ:*

**ԿԱՐԵՒՈՐ ՃՇԴՈՒՄ** *Յառաջի երէկուան թիւին մէջ սխալմամբ գրուած էր թէ Սեւրի Մուրատեան վարժարանին մէջ,* Revue des deux Mondes*ի քաղաքական խմբագիր Պ. Պընէ Փինոնի ընդունելութիւնը տեղի կ'ունենայ այսօր, Կիրակի:*

*Տեղի պիտի ունենայ յառաջիկայ Կիրակի 24 ապրիլ, ժամը 3.30ին:*



## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

*— Ստանոզցի Տիկին Նուրան Գաֆէճեան կը փնտռէ իր քոյրը՝ Տիկին Վառվառ Տօղանեան, որ կինն էր Բէմախցի Արշակ Տօղանեանի: Չորս տարի առաջ նամակ կուզար Մէքսիկայէն: Լուր ունեցողներէն կը խնդրուի տեղեկացնել՝* Mme. Nouran Cafédjian, 13 Bld. Clair Isnard. St. Jérôme, Marseille, France.

*— Կը փնտռուի Հաճընցի Գէորգ Տըմպըլեան, հօր անուն Կարապետ (դերձակ): 1926ին հայր եւ որդի կը գտնուէին Պէյրութ: Կը կարծուի թէ այժմ կը գտնուին Ֆրանսա: Իմացնել՝* Minas Karachian, Caserne d'Offemont, Belfort, France:

*Կը խնդրուի Սուրիահայ թերթերէն արտատպել:*




Imp. A. DER (Agopian)
**17, Rue Damesme, Paris (13)**

***Le Gérant H. STEPHAN***


## ՎԱՀՐԱՄ ՓԱՓԱԶԵԱՆԻ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄՆԵՐԸ

# Վ. ՓԱՓԱԶԵԱՆ

ԿԸ ՆԵՐԿԱՅԱՑՆԷ

# „ՀԱՄԼԷԹ„

ՈՂԲԵՐԳՈՒԹԻՒՆ ՇԷՔՍՓԻՐԻ

*(5 արար)*

*Այսօր կիրակի ցերեկ ժամը ճիշդ 3ին*

**MAISON de la MUTUALITÉ***ի սրահին մէջ*

**24 Rue St. Victor Métro Maubert-Mutualité**

*Կը մասնակցին.*— Տիկիններ՝ Մ. Սուրաբեան, Անահիտ, Գայեանէ, Պ. Պ. Թօլաեան, Ա. Գմբէթեան, Կոթիկեան, Սարաֆեան, Մաքսուտեան, Տէրվիշեան, Աժտէրեան, Սուրէնեան եւ Սուրաբեան:

**ՏՈՄՍԵՐՈՒ ԳԻՆԵՐԸ՝ 25, 20, 15 ԵՒ 10 ՖՐԱՆՔ**

*Տոմսակները կը ծախուին ներկայացման օրը՝ կէս օրէն սկսեալ թատրոնին կիցէն:*

*Ոչ ոքի տոմսակ չի ղրկուիր*

Ռէժիսէօր՝ Վ. ՓԱՓԱԶԵԱՆ Պատասխանատու վարիչ՝ Ս. ՍՈՒՐԱԲԵԱՆ



ՎԱՀՐԱՄ ՓԱՓԱԶԵԱՆ (Համլէթի դերին մէջ)

## ԱՊՐԻԼ ՏԱՍՆԸՄԷԿ ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՍԳԱՏՕՆ

### Այսօր կիրակի իրիկուն ժամը ճիշդ 9ին

84 Rue de Grenelle, Salle d'Horticulture, Métro: Rue du Bac

Նախաձեռնութեամբ Գ. Ռ. Մ.ի փարիզի մասնաճիւղին, մասնակցութեամբ Հ. Յ. Դաշնակցութեան, Ռամկ.—Ազատական կուսակցութեան, Հ. Հ. պատուիրակութեան, Հ. Բարեգործական Ընդհ. Միութեան, Գրական Ակումբին, Հ. Մ. Ը. Մ.ին, Ա. Ե. Կ. Խաչին, Հ. Մ. Ը. Մ.ի փարիզի շրջանի սկաուտական կեդր. յանձնախումբի, Պանեէօ-քաշան ցառաջդիմասիրաց Միութեան, Տրապիզոնի, Շապին Գարահիսարի, Ատափազարի, Տարօն Տուրուբերանի, Կիլիկիոյ, Ուրֆայի հայր. միութիւններուն:

կը նախագահէ՝ ՏՕՔԹ. ՎԱՀՐԱՄ ԹՈՐԳՈՄԵԱՆ

կը խօսին՝ Գ. Ռ. Մ. կողմէ Պ. ՇԱՒԱՐՇ ՆԱՐԴՈՒՆԻ, Ռամկավար-Ազատական կուսակցութեան կողմէ Պ. ՀՐԱՉ-ԵՐՈՒԱՆԴ, Հ. Յ. Դաշնակցութեան կողմէ Պ. ԿԱՐՕ-ՍԱՍՈՒՆԻ:

կ'երգէ ՕՐ. ՀԱՅԿԱՆՈՒՇ ԹՈՐՈՍԵԱՆ

գեղարուեստական բաժին՝—Նուագախումբ մը՝ բաղկացած 16 հոգիէ՝ հայ և օտար արուեստագէտներէ, ղեկավարութեամբ Պր. Ա. ՊԱՐԹԵՒԵԱՆԻ կը նուագէ հայ եւ օտար երգեր եւ շարականներ:

կը նուագեն՝ Mr. Worms, Mlle Lefèvre, Mr. Julien Brun, Mlle Clément, Mr. Fredman, պսակաւորներ փարիզի պետ. երաժշտանոցէն

Հանդէսին կարգապահութեան կը հսկեն Հ. Մ. Ը. Մ.ի Փարիզի սկաուտներն ու արենուշները:

---

կուին ոստիկանութեան կողմէ. իսկ այն անձերը որոնց վրայ կասկած կը ծանրանայ թէ կ'երթան խորհուրդի նիստերուն մասնակցելու, կամ կը ձերբակալուին կամ կը պատրաստուին ետ դառնալու: Երկաթուղիի ընկերութիւնները հրահանգ ստացած են տոմսակ չտալու պատգամաւորներուն:

Հնդկական զաւառի զանազան վայրերէն բազմաթիւ անձեր մեկնած են դէպ ի Տէլհի, ուր կառավարութիւնը աւելի եւս զօրացուցած է իր ուժերը:

⁂ Հնդկաստանի փոխարքան օդանաւով Տէլհիէն մեկնեցաւ դէպ ի Քոհաթ: Հիւսիս-արեւմտեան շրջանի վարչական նոր օրէնսդրութեան մասին՝ իր խօսած ճառը մեծ ազդեցութիւն գործեց: Սակայն, Մարտանի շրջանին մէջ՝ Կարմիր շապկաւորները կը շարունակեն իրենց թշնամական ընթացքը: Առնէ, ընդունեցին բանաձեւ մը, յայտարարելով թէ կանտիական ուղեգծին, այսինքն ոչ-բռնութեան ժամանակն այլ եւս անցած է եւ թէ երիտասարդները պէտք է այլ եւս զէնքով կռուին՝ զինեալ ուժերուն դէմ:

---




Imp. A. DER (Agopian)
17, Rue Damesme, Paris (13)

Le Gérant H. STEPHAN

# ԱՊՐԻԼ ՏԱՍՆԸՄԷԿ
## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՍԳԱՏՕՆԸ ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

Կիրակի երեկոյ տեղի ունեցաւ Ապրիլեան նահատակներու համազգային սգատօնը, Սալ տ'Օրթիքիւլթիւրի ընդարձակ սրահին մէջ։

Այս տարի Հ. Յ. Միութեան հրաւէրին պատասխանած էին գրեթէ բոլոր ազգային ու քաղաքական կազմակերպութիւնները, այնպէս որ կարելի է ըսել թէ իրական համազգային սուգի մը արտայայտութիւնը դարձաւ հանդէսը։

Ներկայ էին Փարիզի գրեթէ բոլոր հայ մտաւորականները եւ ծանօթ դէմքերը, Տէր եւ Տիկին Ահարոնեան, Պ. Պ. Ա. ...

ներկայացուցիչներ ունէին, ոմանք ուղերձներ ղրկած էին։

Ժամանակէն առաջ սրահը լեցուած էր խուռն բազմութեամբ։ Հանդէսին սկզբնաւորութեան՝ բազմութիւնը կը յորդէր միջանցքներուն ու նրբանցքներուն մէջ, մինչեւ սրահին արտաքին դուռները։ Տեղի չգոյութեան պատճառաւ, այնքան խճողուեցաւ սրահը, որ շատեր ոտքի վրայ կանգնած մնացին, սեղմուած, եւ շատեր ետ վերադարձան։

Տօքթ. Վահրամ Թորգոմեան, որուն նախագահը, բացաւ հանդէսը ...

կեցնէ Թուրքիոյ առջեւ։ Ատոր համար է, որ յանուն Հ. Յ. Միութեան կը համբուրեմ սա երկու բառերը, ազգ եւ հայրենիք, եւ կը կոչեմ.— Կամ Հայ, կամ մախր»։

Յետոյ Թաւ-Ջութակահար Worms նուագեց երգ վասպուրականի (Ա. Պարթեւեան, Զէյթունի հերոսին երգը, Սահակ Մեսրոպին օրհներգը։ Պ. Ոստանիկ հատուած մը արտասանեց իր մէկ նոր բանաստեղծութենէն, «Արեւելքէն արեւմուտք»։

Ռամկ. Ազատ. կուսակցութեան կողմէ խօսեցաւ Պ. Հրաչ Երուանդ.
— Տարին օր մը կը ճամբորդենք մահուան թափօրին հետ։ Տարին օր մը կը խօսինք մեռելներուն հետ։ Մեռելներու այդ թափօրը դժուար թէ դարերու մէջ ունենայ իր նմա-...

## ՄԱՄՈՒԼ
### Անդրկովկասեան Դաշնակցութիւնը

Անդրկովկասեան դաշնակցութեան տասնամեակին առթիւ, որ լրացաւ մարտ 12ին, Սոֆիայի «Ազատ խօսք»ը դիտել կուտայ խմբագրականին մէջ (20 ապրիլ).

— «Անդրկովկասեան Դաշնակցութեան կազմութեամբ ո՛չ կովկասեան ժողովուրդներու հակամարտութիւնները վերջացան, ո՛չ նախկին վէճերը լռեցին, ոչ ալ գոյութիւն ունեցող հարցերը արդարօրէն լուծուեցան։ Այսօր ալ Ախալքալաքի եւ Լոռիի, Նախիջեւանի եւ Զանգեզուրի Ղարաբաղի, Արխազիայի, Հարաւ. Օսեթիայի եւ Աջարիստանի հարցերը կը մնան առկախ եւ առատ նիւթ՝ փոխադարձ վէճի, գրգռութեան եւ հակամարտութեան։

Սահմանային այս բարդ ու խճճուած հարցերը, Անդրկովկասեան Դաշնակցութեան կազմութեամբ, «լուծուեցան» ի վնաս Հայաստանի։ ...

Ղարաբաղը 4. 160 քառ. քիլոմեթր տարածութեամբ եւ 125,300 բնակիչներով։

Հայաստանը բռնի կերպով զրկուեցաւ Նախիջեւանէն, որ ունի 5,998 քառ. քիլ. տարածութիւն եւ 104,960 բնակիչ։

Հայաստանէն նոյն բռնութեամբ խլուած է Ախալքալաքը, որ ունի 3000 քառ. քիլ. տարածութիւն եւ 80 հազար բնակիչ։

Այլ խօսքով, Մոսկուայի պարտադրութեամբ եւ հայ համայնավարներու ստրկական համակերպութեամբ, ոչ միայն Հայաստանի անկախութիւնը փոխարինուած է Անդրկովկասեան Դաշնակցութեան խրտուիլակով եւ մեր երկիրը դարձած է ռուսական գաղութ մը ու շահաստան մը, այլեւ մեր հայրենիքը կորսնցուցած է 13,047 քառ. քիլոմեթր տարածութիւն եւ 309,430 բնակիչ։ Ու ճիշդ այս պատճառաւ ալ արտասահմանի հարիւր հազարաւոր Հայերու տարագրութիւնը յաւերժացուած է, իսկ ներգաղթը դարձած է գործեան հանգոյց...

Սակայն, Անդրկովկասեան Դաշնակցութեան «բարիքները» ...

...հաւասարեցման սկզբունքը եւ «օրինականացուած» Հայաստանի յօշոտումը։

Հայաստանէն բռնի խլուած է ...

...ընթերցողները պիտի յիշեն թէ՝ Փարիզի ռամկավար պաշտօնաթերթն ալ նոյն դիտողութիւններն ըրած էր, ընդհանուր ձեւով։

...ծումներու միութիւն մը։ Հայ ժողովուրդը սգահանդէս կուգայ, միացնելու համար իր ուժերը։ Եթէ, ինչպէս կ'ըսեն, անմխաբան է Հայը եւ անհամերաշխ, ես գիտեմ եմ որ Հայը յամառ նկարագիր մը ունի չլքելու իր ժառանգական դատը։ Ապրիլ Տասնըմէկը այն հանդիսական պահն է, երբ հայ ժողովուրդը կը հաւաքուի՝ մէկ բերան բանաձեւելու եւ պահանջելու իր ժառանգական դատին լուծումը, իր հայրենի հողերուն վերստացումը»։

Յետոյ Օր. Հայկանուշ Թորոսեան երգեց Մշոյ Ողբը (Sericyx), կալի երգը (Կոմիտաս վրդ.), սրինգով կ'ընկերանար M. Julien Brun։ Ժողովուրդին բուռն փափաքին վրայ, համակրելի երգչուհին երգեց նաեւ Հնձուորին երգը, զոր դաշնաւորած է Յարօ Ստեփանեան, Հայաստանի երիտասարդ երաժիշտներէն, եւ երկրագործին երգը (Կոմիտաս վրդ.), ընկերակցութեամբ սրինգի։

Յետոյ Եր. Գրիգորեան արտասանեց Դանիէլ Վարուժանի դերենիկը։

Ի վերջոյ Պ. Արայ Պարթեւեանի նուագախումբը նուագեց Հով Արէքը, Ակնայ օրօրը, Ալագեազը (Տիրան Ալիքսանեան), Ուրախ լերը (Ա. Պարթեւեան)։

Տօքթ. Վ. Թորգոմեան քանի մը խօսքով փակեց Սգահանդէսը։

Յ. Ա.

Կարդացէ՛ք եւ Տարածեցէ՛ք «ՅԱՌԱՋ»ը

ՕՐ. ՀԱՅԿՈՒՀԻ ԳԱՐԱՊԱՃԱՔԵԱՆ
ԵՒ
ԸՆԿ. ՎԱՐԴԵՎԱՌ ԿԷՕՎՇԷՆԵԱՆ
ԱՄՈՒՍՆԱՑԱՆ
10 Ապրիլ 1932 Անիէռ



...Սփթանտիլեանը ինչպէս նաեւ Արմենակ Գերասիմեանը կ'երթան Սալմաստ իբրեւ զաւառական ...ուցիչներ։ Գասպարը՝ Մահլամ, Արմենակը՝ Փայաջուկ, իսկ Գերա-...

...փոխական շրջաններուն մէջն ալ անդուլ աշխատանքի լծուած՝ անօրինակ ոգեւորութեամբ։

ՄԱՍԻՍ

(Մնացեալը յաջորդով)

"ՅԱՌԱՋ"Ի ԹԵՐԹՕՆԸ (75)

# ԵՐԴԻՔ ՀԱՅՐԵՆԻ
(ՎԷՊ)

Բ. ՄԱՍ

V

Ու ծոքէն կը ջնջուէր իր այդ ծրաբիծը։ «Կարելի է տէր հօրը գրել», կը խորհէր։ Այսուհանդերձ, կը յիշէր անոր խօսքերը, զորս ուղղեր էր իրեն, երբ ինք Պոլիս գալու մասին միշտ կը պնդէր։ Ու ...

կը խորհէր, յաճախ, թէ ինք ու ան միեւնոյն ճամբու ճամբորդները չեն՝ այս կեանքին մէջ։ Երբեմն չէր իսկ համարձակեր մտածելու, թէ ճակատագիրը օր մը ամբողջովին իրը կրնար ընել ...

...ռիկ լռջութիւն մը կը տիրապետէր հոն։ Բոլորին մեծագոյն հաճոյքը ընթերցումն էր։

Այվազեանն ու ինք կապուած էին, ...

Ամբողջ օրը, բան չէր դրած բերանը։ Աջ ու ձախ պարտքեր ըրած էր ու անօթխածութենէն ծնող յուսահատութիւն մը կը խանգարէր իր ծռածումին սովորական ...

(Շար.) Կ. ՄԻՀԵԱՆ

